**1917** № 25—ՅՈՒԼԻՍԻ 2 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ



ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի. Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արտաարաղեան հրապար. № 7. Հեռախօս № 29.

Պատի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից. Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում.

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



# ՄՏԱԽՈՀՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՊԱՏԵՐԱԶՄԻ ՇՈՒՐՋԸ

Համաշխարհային արիւնահեղ պատերազմը մտնում է իւր գոյութեան չորրորդ տարեշրջանը.

Անսահմանի են այս պատերազմի ծանր հետեւանքները.

Միլիոնաւոր մարդիկ, մեծ մասամբ երիտասարդ հասակում, մայր հողի տակ գտան իրենց յաւիտենական հանգստութիւնը. ոչ պակաս քանակութեամբ արժանաւոր հայրենիքի պաշտպաններ տառապում են այս րոպէիս հիւանդանոցներում, կամ գերութեան մէջ.

Ստեղծագործական աշխատանք, լուսաւորութիւն, կուլտուրա, արդիւնաբերութիւն, առեւտուր կանգ են առել, մեռելային դրութեան մէջ են. տնտեսական քայքայումը առասպելական չափերի է հասել. մի խօսքով ստեղծուել է աներեւակայելի ճնշող, խեղդող մթնոլորտ. ամեն մէկը զգում է մի ինչ-որ վտանգաւոր անորոշութեան, տագնապի առաջ.

Ոչ մի պատերազմագէտ, ոչ մի խորիմաստ քաղաքագէտ, անպայման և ոչ մի պատմաբան չի կարող գուշակել, թէ երբ է վերջ լինելու այս մարդկային անմիտ արիւնհոսութեան, եղբայրասպանութեան, թէ երբ է անհետանալու իմպերիալիզմից մնացած այս չարիքը.

Դժուար է ցոյց տալ պատմութեան մէջ մի այլ դէպք, երբ մարդկային իմաստութիւնը, մարդկային հեռատեսութեան ընդունակութիւնը այնքան թոյլ դուրս եկած լինէր, ինչպէս այդ արտայայտուեց ներկայ պատերազմի մասին.

Ոչ հնարագէտ Ֆրանսիան, որի կռուան տակ էր նրա ոխերիմ թշնամի Գերմանիան, ոչ Անգլիան, որի դիւանագիտութիւնը վաղուց ստացած է համաշխարհային հռչակ, վերջապէս ոչ էլ նոյն Գերմանիայի հարեւան Ռուսաստանը, չը նայած, որ Գերմանիայում ունէին դեսպանատներ, կոնսուլներ ու զանազան անուան տակ գործակալներ ու ծախսում էին ամեն տարի նրանց վրայ շատ մեծ գումարներ, չը կարողացան նկատել թէ ինչպէս Գերմանիան տասնեակ տարիների ընթացքում աշխատում է և թէ նա ինչ հսկայական զինուորական պատրաստութիւններ է տեսնում, ի հարկէ, իւր հարեւանների դէմ.

Պատերազմի սկզբում թէ հասարակութեան և թէ մա-

մուլի մէջ տիրում էր մի կարծիք, որ Ռուսաստանի, Անգլիայի ու Ֆրանսիայի միացեալ ուժերի դէմ Գերմանիան մի քանի ամիս հազիւ դիմանայ, որ Գերմանիան կը ջարդուի կարճ ժամանակամիջոցում։

Սակայն իրականութիւնը ցոյց տուեց այլ պատկեր. պատերազմի հենց առաջին շրջանից պարզուեց, որ ամբողջ Գերմանիան մի պատրաստի զօրաբանակ է, որ նրա զինուորական ոյժերը, ֆինանսական միջոցները, օրինակելի տեխնիկան, զինուորական կարգապահութիւնը արտասովոր են, իսկ ժողովուրդի ոգևորութիւնը անսպառ։ Դաշնակից պետութիւնները ներկայացնում էին հակապատկեր. Ֆրանսիան ու Անգլիան պատրաստ չէին պատերազմի համար. Անգլիան ունէր ընդամենը երկու հարիւր հազար զինուոր, իսկ Ռուսաստանը թէև ունէր շատ զինուոր և պակասող շարքերը կարող էր լրացնել, բայց անկազմ էր ու շատ աղքատ տեխնիկայի կողմից։

Ահա թէ ինչու Գերմանիային յաջողուեց մի շարք յաղթական կռիւներով ստեղծել իրեն համար դիրք ու լքումն մտցնել հակառակորդների մէջ։

Իսկ Գերմանիայի ծովային արշաւանքները անյաղթելի ճանաչուած Անգլիայի դէմ աւելի բարձրացրին նրա հեղինակութիւնը։

Ճիշտ է և այն, որ Գերմանիան էլ ազատ չի մնացել խիստ հարուածներից. նա էլ տուել է մեծ կորուստներ։ Սակայն դաշնակից պետութիւնների այդ յաղթութիւնները չեն կարողացել խախտել Գերմանիայի դիրքը, նրա ձեռքումն են դեռ ևս Ռուսաստանի քսան նահանգները, նրա և կողմնակիցների իշխանութեան տակ են գտնւում մի քանի փոքրիկ, յաղթուած տէրութիւններ՝ Բելգիա, Սերբիա, Չեռնագորիա. նրանից դեռ յետ չեն խլուել Ֆրանսիայից նուաճած հողերը։

Մեծ յոյս կար, որ Գերմանիան եթէ չը յաղթուի զէնքով, կը յաղթուի սովից։ Այս յոյսը ևս չարդարացաւ։ Գերմանիայում, իրաւ է, կայ սով, բայց դժբաղդաբար նրա հակառակորդներն էլ աւելի լաւ դրութեան մէջ չեն այդ կողմից։ Քաղցի ճգնաժամն ընդհանուր երևոյթ է դարձել։

Այս ծանր պայմաններում շարունակւում է պատերազմը, բայց ամենուրեք և շատ բնականաբար զգացւում է հրամայողական կարիք վերջ տալ պատերազմին. հանգամանքները միայն այդ կարող են թելադրել։

Կռուող զօրքերը երկու թշնամի բանակի ուժասպառ են եղել, թուլացել են. իսկ նրանց յետևում մնացած ժողովուրդները, լինելով զրկուած աշխատաւոր ձեռքերից, տնտեսական տագնապի մէջ են. սովի ուրուականն է կանգնած ամենքի աչքի առաջ։

Բոլոր երկրներում արտադրութիւնը կենսական մթերքների և առհասարակ պակասել է աշխատաւոր ձեռքերի պատճառով, իսկ գործադրութիւնն ընդհակառակը շատ աւելացել, որովհետև տասնեակ միլիոնաւոր մարդիկ՝ զինուորներ, գտնուելով պատերազմի դաշտում, ոչինչ չեն արտադրում ու միայն գործադրում են պատրաստի մթերքներ և ամեն տեսակ ապրանքներ։

Այս դրութիւնն աւելի և աւելի է սրուելու և վերջը պայթելու է ծանր հետևանքներով։

Ռուսաստանի դրութիւնը իր դաշնակիցների դրութեան հետ համեմատած աւելի ծանր է։ Զօրքերի մէջ տիրում է կատարեալ բացակայութիւն զինուորական կարգապահութեան. զօրքերի մէջ բացարձակ կերպով «բոլշևիկների» քարոզները ընդդէմ պատերազմի, ընդդէմ նոր կառավարութեան, արդէն տալիս են իրենց բացասական հետևանքները. զօրքերի մէջ մտել է կազմալուծումն և անիշխանութիւն. զինուորները ոչ թէ միայն թիկունքում, այլ և պատերազմի խոր ճակատում զբաղուած են միտինգներով և քաղաքականութեամբ։

Պարենաւորման գործը չի կարգաւորւում, իսկ առաջիկայ տարի սպառնում է աւելի մեծ սով. Վոլգայի և մի քանի այլ խոշոր շրջաններում անբերրիութիւն է։ Պետական ֆինանսներն էլ ողբալի դրութեան մէջ են. ապացոյց դրան տիրող թանգութիւնը և մեր դրամի արժէքի ընկնելը մինչև անգամ այն երկիրներում, որտեղ չը պէտք է սպասէինք. Ֆինլանդիայում, որը Ռուսաստանի մի մասն է համարւում, 100 ռուբլու արժողութիւնը եղել է 300 աւելի մարկայ, իսկ այժմ հասել 130 մարկայի. Պարսկաստանում, որտեղ Ռուսաստանի ազդեցութիւնը համահաւասար է եղել, եթէ ոչ աւելի, իրեն Պարսկաստանի կառավարութեան հեղինակութեան, մեր մէկ ռուբլու արժէքը հասել է մէկ կրանի, այսինքն քսան կոպէկի։

Հաւասարակշռութիւնը դրամի և վաճառուող ապրանքի մէջ հենց մեր երկրում էլ շատ մեծ չափով խախտուել է, դրամը կորցրել է իր համապատասխան և նորմալ նշանակութիւնը։

Ահա թէ ինչ անելանելի դրութիւն է ստեղծուել, ինչ անյաղթելի և ծանր հանգամանքներ են առաջ եկել։ Բոլոր կռուող պետութիւնները, նրանցից մի քանիսը գուցէ աւելի, տնքում են այդ դրութեան ծանրութեան տակ. բոլորն էլ անշուշտ զգում են հաշտութեան կարիք, միայն հաշտութեան պլատֆորման չէ պարզւում։

Անհնարին է վերջ տալ պատերազմին առանց փոխադարձ զիջումների. միայն այս ճանապարհը կարող է տանել դէպի խաղաղութիւնը։

Յամառութիւնը հաշտութեան դէմ, այն էլ ներկայ անկազմ և անիշխանական ժամանակը, կարող է փոթորկալի հետևանքներ ունենալ։

Պէտք է շտապել։

Ամբողջ խնդիրը դաշնակից պետութիւնների կողմից կայանում է նրանում, որ հաշտութեան պայմանները

պատուաբեր լինեն, որ Գերմանիայի միլիտարիզմը ու ագրեսիւ քաղաքականութիւնը սանձահարուի ու փոքր ազգերի ազատութիւնը ապահովուած լինի։

Գերմանիան և նրա կողմնակից պետութիւնները չը պէտք է դիմադրեն այս արդարացի պահանջներին, հակառակ դէպքում իրերի դրութիւնը անողորմ կերպով կը ստիպի նրանց համաձայնուել և հաշտութիւն կնքել գուցէ աւելի ծանր գնով։

Ս. Ցարութիւնեանց

# ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

## ՄԵԾ ՄԻՏԻՆԳ ՍԹՈԿՀՈԼՄԻ ՄԷՋ Ի ՆՊԱՍՏ ՀԱՅԵՐԻՆ

Մարտի 27-ին Շւէդի մայրաքաղաք Ստոկհոլմի մէջ գումարուած է մի մեծ միտինգ համակրութիւն յայտնելու հայերին և բողոքելու Թուրքերու պարհուրելի բարբարոսութիւնների դէմ։ Միտինգը գումարուել է Ստոկհոլմի քաղաքապետարանում քաղաքագլուխ պ. Լինդհակընի նախագահութեամբ։ Այդ գեղեցիկ մեծ սրահը լիքն է եղել մեծ բազմութեամբ, որին ներկայ են եղել նաև դաշնակից պետութիւնների դեսպանները։ Ճառեր խօսել են քաղաքագլուխ պ. Լինդհակըն, Ռիքստակի (Շւէդական խորհրդարան) անդամ յայտնի սոցիալիստ Բրանտինկ, կոմսուհի Շթէտնսթէտ և «Dagens nyheter» օրաթերթի խմբագիր պ. Կարշկրէն. ճառերն ընդունուած են մեծ խանդավառութեամբ։

Այս մանրամասները ինձ հաղորդող խմբագիր պ. Կարշկրէն աւելացնում է որ կազմուած է Շւէդական մի նպաստամատոյց յանձնախումբ՝ օգնութեան հասնելու Միջագետքի մեր դժբաղդ հայրենակիցներին։ Իսկ Րէօթէր-ի հեռագրական գործակալութիւնը անգլ. մամուլին մէջ հրապարակուած մի հեռագրով աւելացնում է որ միտինգը անցուց մի որոշում արտայայտելու քաղաքակիրթ աշխարհի զզուանքը ի մասին այն աննախընթաց գազանութիւններին, որոնց զոհուած են պաշտպանութեան բոլոր միջոցներից զրկուած հայերը։ Որոշումը անցել է ծափերով,

Սվէն Հէդին եւ Թիւրքերը։— Գուցէ ծանօթ է ձեզ որ Շւէդացի յայտնի գրող և հրապարակագիր Սվէն Հէդին ներկայ պատերազմի սկզբից ի վեր եղել է Շւէդացի գերմանոֆիլների ամենագործօն ղեկավարը։ Վերջին երկու տարիների ընթացքում նա միշտ գտնուել է գերմանական ռազմաճակատների վրայ, ընդունուել է կայզէրի կողմից և հնարաւորութիւն է ունեցել տեսնելու ամեն ինչ։ 1915-ին նա գերմաներէնով հրատարակեց մի դիւցազներգական քերթուած—Ein nation im Waffen—(սպառազէն մի ազգ) վերնագրով, որով նա հիացմունքով կը ներկայացնէ գերմանական բանակների «առասպելական հերոսութիւնը»։ Իսկ 1916-ի ընթացքում նա Թուրք կառավարութեան հրաւէրով այցելեց Թիւրքիա, և անցնելով Փոքր Ասիայի միջով Բաղդադի երկաթուղիի գծով նա այցելեց նաև Բաղդադը, բնականաբար Հալէպում և Եփրատի ընթացքն ի վեր ականատես լինելով տեղահանուած հայերի դրութեան։

Այս անգամ նա հրատարակեց մի ուրիշ հատոր մինչև երկինք բարձրացնելով Թիւրքերի ասպետական սխրագործութիւնները և հայկական ջարդերի պատասխանատուութիւնը բարդելով հայերի վրայ։ Սակայն վերոյիշուած Ստոկհոլմի միտինգը և ընդունուած որոշումը արդէն ցոյց է տալիս Շւէդական իշխանութիւնների և ժողովրդի տրամադրութիւնը դէպի Թիւրքերը և նրանց «ասպետականութիւնը»։

Բացի դրանից Շուեդացի մի նոյնչափ յայտնի գրող և հրապարակագիր Օսիան Նիլսըն մի քանի օր առաջ հրատարակել է մի տետրակ, որով նա ուժեղապէս կը յարձակի Սվէն Հէտինի վրայ՝ մատնանշելով Բելգիայում և Հայաստանում գերմանո-Թիւրքական հերոսութիւնների իսկական բնաւորութիւնը։

Զօրաւոր փաստերով Նիլսընը դատապարտում է Սվէն Հետինին նրա հակամարդկային զգացմունքների համար, որոնցով վերջինս ներկայացնում է Բելգիայի և Հայաստանի դատերը։

Contemporary Review և հայկական կոտորածները.— Պոլսոյ Ամերիկեան դեսպանատան նախկին պաշտօնեայ պր. Լուիզ Էնսթէյն Contemporary Review ամսագրի ապրիլի համարի մէջ գրել է մի յօդուած «Հայկական կոտորածներ» վերնագրով։ 1915-1916-ին գտնուելով Պոլսում որպէս չէզոք պետութեան մի դիւանագիտական պաշտօնեայ, պր. Էնսթէյն չափաւոր լեզուով կը պարզէ Թիւրք կառավարութեան և ժողովրդի վարմունքը դէպի հայ ազգը և առաջինի կանխամտածուած քաղաքականութեան բոլոր գաղտնիքները։ Նա կը յիշէ բազմաթիւ փաստեր Թիւրք գազանութեան, կենդանի լեզուով որպէս չէզոք և ականատես վկայ. նրա յայտնութիւնները կը ներկայացնեն ամենաուժեղ փաստ ընդդէմ Թիւրքական ամբաստանութիւններին և ներհակում են երիտասարդ Թիւրքերի Զուիցերիայում մղած հակահայկական պրոպականդային։

«Պոլսում, Զմիւռնիայում և Սիրբիայում դեռ ապրում են շատ հայեր, բայց թէ մինչև պատերազմի վերջաւորութիւնը նրանք դեռ պիտի մնան այդ կեդրոններում խնդրական է։ Սակայն ուր որ էլ լինին այդ հայերը, Անգլիա, Ֆրանսիա և Ռուսաստան, պատեհ բոպէին պէտք է հասկանան նրանց կրածները իբրև զոհ Դարդանէլեան արշաւանքի անյաջողութեան, և Ամերիկացի մեծամասնութիւնը պէտք է փութայ նրան օգնութեան նրանց թըշուառութեան պահուն։ Այդպէս է վերջացնում իր յօդուածը Ամերիկացի դիւանագէտը, որպէս մի չէզոքի ասելով այն, ինչ որ Դաշնակից պետութիւնների պետական մարդիկ խորապէս ըզգում են իրենց մեղապարտ գիտակցութեան մէջ, և գուցէ նրանք երբէք չունենան իրենց դաւանած ասպետականութիւնը խոստովանելու իրենց ուղղակի պատասխանատուութեան բաժինը՝ հայկական ողբերգութեան մէջ։

Լոնդոն

ԱՐՇԱԿ ՍԱՖՐԱՍՏԵԱՆ

# ՆՈՐ ՅԵՂԱՓՈԽՈՒԱԾ ՌՈՒՍԱՍՏԱՆՆ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԸ *)

Մինիստր Միլիւքովն ասաց.

«Թուրք տիրապետութեան տակ տանջուող ժողովուրդների «ազատութեան մասին խօսելով, Համաձայնութեան Պետութիւն«ների կառավարութիւնները չեն մտածում իրենց կարգին իրենց «լուծը դնել Թուրք ժողովուրդի վզին»։

Սրանից մի բան հետևում է. մինչդեռ Թուրք ժողովուրդը որ իւր արիւնարբու գազանութեան համար արժանի էր ամենածանր լուծի և զրկուելու միւս ժողովուրդներին տիրելուց, մինչդեռ քաղաքականապէս շարունակելու է տևել, իսկ հանդէպ ս...

*) Տես «Համբաւաբեր» № 24

րա, հայ ժողովուրդը, որոյ ազատագրումը «մինն է Համաձայնութեան Պետութիւնների հետապնդած գլխաւոր նպատակներից», չի՛ ստանալու որպէս վարձատրութիւն իւր՝ դաշնակիցների համար թափած արիւնի, այլ ստանալու է միմիայն լուծի մի փոփոխում։

Այս աղաղակող անարդարութիւնը չի արգիլում որ մինիստր Միլիւքովը ասի իւր խօսակից մամուլի ներկայացուցիչներին.

—«Կարելի է խօսել առանց աննեկսիայի խաղաղութեան մասին, պայմանաւ որ աննեկսիա նշանակի ուզուրպացիա (բռնագրաւում) և սա նրա համար, որ Եւրոպական Թիւրքիայ վերջ դնելը ուզուրպացիա չէ՛, մինչդեռ Ասիայում Թիւրքիային վերջ դնելը ուզուրպացիա է լինելու։ Եւ ապա մի ժողովուրդի, որ վեց դար իւր վզին տարել է աշխարհումս անօրինակ և ամենաարիւնարբու մարտիրոսութիւն իւր քաղաքական գոյութեան սկզբունքի սիրուն, կցումը Ռուսաստանին ոչ միայն չի նշանակում ուզուրպացիա, յանիրաւի յափշտակութիւն, այլ պարտաւո՞ր ենք դեռ ազատագրում նկատել այդ. ասես թէ այդ էլ մինն է ազգայնութեան սկզբունքների անունով մղուած պատերազմի նուիրագործած գլխաւոր նպատակներից...։

Եւ մինիստր Միլիւքովը գտնում է որ այս ամենը ոչ միայն չի հակասում Վիլսոնի նախագծին, այլ նրա անխուսափելի յեղանակումն (svolgimento) է Եւրոպայի և Արևելքի յարաբերութիւնների հաստատուն կարգաւորութեան։

Միլիւքովի ակնարկած հովանաւորութիւնը մի պարագայում կարող է չի համապատասխանել ազգայնութեան սկզբունքին, կարող է առնուազն նկատուել հայ հարցի մարդավայել կերպով լուծումն։ Այդ այն ժամանակ կը լինէր այդպէս, եթէ Ռուսաստանը երբ և է աշխատած լինէր հայերը ազատել նրանց բզկտող գազանի ճանկերից։ Բայց մինիստր Միլիւքովը շատ լաւ գիտէ թէ ինչպէս Ռուսաստանը անտարբերութեամ'բ թողեց, որ կոտորեն հայերին, այդ լինի ներկայ պատերազմի ժամանակ թէ առաջ։ Միլիւքովը գիտէ թէ ինչպէս 1915 թուին ամբողջ մի ժողովուրդի տեղահանուելու և կոտորուելու ժամանակ ռուս հաղորդագրութիւնները կովկասեան ճակատի վիճակի մասին գրում էին միայն՝

«Հրացանաձգութիւն է Օլթիի ուղղութեամբ»։

Եւ մինչդեռ նախ քան այդ կոտորածը և տեղահանութիւնները, ռուս նաւատորմը ամեն օր ռմբակոծում էր Սև ծովի ափերը, այդ կոտորածի տևողութեան բոլոր ժամանակ ոչ մի ռմբակոծութեան չի ձեռնարկուեց, երբ սուրբ մարտիրոսների յոյսերը թախանձագին սլանում էին դէպի այսպէս ասած «Քրիստոնեաների պաշտպանի» կողմը։ Եւ մինչդեռ հայերը բարձրանում էին Քրիստոսի Գողգոթայից աւելի դաժան, դառնագին մի Գողգոթա, Ռուսաստանում նախագծեր էին կազմում թէ ինչպէս պէտք է օգտուել հայերի թափած արիւնից և թէ ինչպէս պէտք է ռուսական գաղութներ կազմել դատարկուած և ռուսերի ձեռքով ազատած Հայաստանի շրջաններից։

Ասում էին դեռ այդ ժամանակները, որ ազատուած Հայաստանում «մուսուլմանների կացութիւնը աւելի բարւօք է քան հայերինը...» *)։

Էհ, ո՞րն ասենք, ո՞րն թողնենք։

Թող այս ամենից յետոյ հայ ժողովրդին իբր թէ ազատելու անունով նրա վզի լուծը փոփոխելու դառն կատակը խնայուի նրան։

Ո՛չ, Հայաստանը ուզում է լինել ազատ և անկախ, այս կամ այն ձևի տակ, բայց միայն անկախութիւնը կարող է ապաքինել նրա սարսափելի վէրքերը, որ և է այլ կերպ լուծում հայ ազգի դատ՝, նրա սպանութիւնը (սկսուած թիւրք ժողովրդի և կառավարութեան ձեռքով) կը լինի վախճան և լրումն այդ սպանութեան։

Ռուս ժողովուրդը իւր ձեռք բերած ազատութեան այս ըսքանչելի այգուն՝ չի կարող լինել թիւրքերի չարագործութեան ընկեր աջակցելով, որ այսպիսի սոսկալի ոճիրը ի կատար ածուի, ոճիր՝ որի զոհը միշտ հաւատ է ունեցել Ռուսաստանի վրայ և այդ հաւատքով նրան մատուցել է գնահատելի ծառայութիւններ և որոնք մինչև այսօր փոխարինուել են ամենասև ապերախտութեամբ։

Նոր նորոգուած Ռուսաստանը, մենք ուզում ենք յուսալ, կը սրբի այս դարաւոր արատը։

Corrado Corradino

Իտալ. թարգմ. Ա. Փէթվաճեան

(Վերջ)

*) Տես այս առթիւ Русское Слово Երզրումի թղթակից Ф. Сибирскій նամակները։

---

# ՌԱԶՄԱԿԱՆ ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԻ

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆԸ

Անգլիան զինուորական գործողութիւնների վերաբերեալ ամեն բանում իր հիանալի շրջահայեցութեամբ՝ պատերազմի ամբողջ ընթացքում ձեռնարկել է միայն այնպիսի գործողութիւնների, որոնք նախապէս հասուն խորհրդածութեան և երկար ուսումնասիրութիւնների առարկայ են դարձել, և որոնք միշտ էլ ամենայն ուշադրութեամբ գործադրուել են բրիտանական գլխաւոր շտաբի կողմից։

Ուստի ժողովուրդն ուրախութեամբ էր ողջունում ամեն մի նոր ընդունուած ծրագիր՝ դրանով իր վստահութիւնն ապացուցելով գլխաւոր հրամանատարի զինուորական ընդունակութեան։ Միայն Դարդանէլի դեսանտի հարցն էր, որ գաղտնիք մնաց անգլիական մասսայի համար։ Դրանում անտարակոյս մեղաւոր է մամուլը, որն այդ գործողութիւնների սկզբում չափազանց լաւատես էր՝ համարեա աւետելով յաղթանակն ու նախատեսելով, որ դաշնակից բանակներն ու նաւատորմիղը շուտով Պոլիս կը մտնեն։

Այդպիսի դիւրին յաղթութեամբ տարուած ու տենդագին սպասելով Պոլսի անկման, որ միշտ ուշանում էր, ժողովուրդը յուսահատուեց, երբ իմացաւ, թէ անգլիական նաւատորմիղը ծանր կորուստ է ունեցել։ Նաւատորմղից յետոյ կռուի քաշուեց հետևակազօրքը, որ թւում էր, թէ աջողութիւն է գտնելու, բայց ժամանակի կորուստի մեծ սխալը պատճառ դարձաւ ձախողանքի, և երբ դաշնակից զօրամասերն ելան Թերակղզու վրայ, արդէն 300,000-նոց թիւրքական բանակը կազմ ու պատրաստ սպասում էր այնտեղ։

Ահա, թէ ինչու այդ արշաւանքից ու զօրամասերն այնտեղից յետ քաշելուց յետոյ՝ մի յանձնաժողով կազմուեց քննելու և տեղեկագիր կազմելու Գալիպոլիի արշաւանքի մասին։

Յանձնաժողովի նիստում Սըր Մարկ Սայկս դիտել տուեց, թէ այդ արշաւանքի քաղաքական հետևանքները շատ ծանրակշիռ եղան, և երբ զօրամասերը յետ քաշուեցին, Անգլիայի հմայքը

100%-ից իջաւ 0%-ի Պարսկաստանում, Աւղանստանում ու Հայաստանում։

Հանգուցեալ Լորդ Կիտչեները անհրաժեշտ էր համարել 300,000 թիւրք ա՛նշարժութեան դատապարտել, և թէև գլխաւոր նպատակն անիրագործելի մնաց, բայց և այնպէս նա կարծում էր, որ քաղաքական որոշ առաւելութիւններ ստացուեցին.—բայց միթէ անհրաժեշտ էր այնքան մարդկային կեանքեր զոհաբերել դրա համար։ Յանձնաժողովը պէտք է մտածէ այդ մարդկային կորուստների մասին և նա իրաւունք չունի ոչ մի կարծիք յայտնելու, նախ քան լիակատար քննութիւն կատարելը։

Ասկւիտը շատ երկար տեղեկագիր կարդաց այդ գործողութեան մասին։ Նա ասաց, որ նախ որոշուեց նաւային արշաւանք կազմակերպել, որովհետև հանգուցեալ Լորդ Կիտչեները, իր պաշտօնակիցների համաձայնութեամբ, ապացուցեց, որ բաւականաչափ զօրագնդեր չկան ցամաքի վրայ զօրք իջեցնելով աջակցել այդ նաւային արշաւանքին։

Ապա Ասկւիտը յայտարարեց, որ այդ արշաւանքը չպէտք է նկատուի իբր մի ողբերգութիւն կամ աղէտ, որովհետև նա ազատեց Կովկասը, յետաձգեց Բուլղարիայի միջամտութիւնն և անշարժութեան դատապարտեց մօտ 300,000 թիւրք զինուորները, որոնք թիւրքական բանակի ընտրուած մասն էին կազմում։ Թիւրքերը երբէք չկարողացան վերականգնել Գալիպոլիում իրենց հասցրած կորուստներից յետոյ, և Եգիպտոսի, Միջագետքի ու Պարսկաստանի անգլիական գործողութիւնների աջող զարգացման պատճառներից մէկն էլ դա էր։

Ասկւիտից յետոյ Չըրչիլը նոյնպէս մի երկար տեղեկագիր կարդաց, ուր մատնանշեց, որ Գալիպոլիի դեսանտը շատ աննըպաստ հասարակական կարծիք ստեղծեց Անգլիայում և մանաւանդ Ֆրանսիայում, ուր պահանջում էին յետ քաշել դաշնակից զօրամասերը։ Պարլամենտում և մամուլում ազդեցիկ անձեր աշխատում էին յուսալքում մտցնել Դարդանէլի գործողութիւնների մէջ։

«Յանձնաժողովը, եզրակացրեց Չըրչիլը, կարող է դատապարտել Դարդանէլը ճեղքել անցնել փորձող անձերին, բայց մեր զաւակները դատապարտութիւնը վերապահելու են այն ամենքին, որոնք օգնութեան չփութացին նրանց»։

Դոնի

## ԱՆԴՐԿՈՎԿ. ԳԻՒՂԱՑԻԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

Վերջացաւ Թիֆլիսում գումարուած Անդրկովկասեան գիւղացութեան համագումարը։ Համագումարը, որ կազմակերպել էին սոցիալիստ-յեղափոխականները, Հ. Յ. Դաշնակցութեան և վրացի ֆեդերալիստները, հակառակ արդիւնք տուեց։

Սոցիալ-դեմոկրատ կուսակցութիւնը, որ մի ժամանակ այնքան դեմոկրատիկ կերպով քարոզում էր, որ գիւղացութիւնը պատկանում է մանր բուրժուազիայի, այսինքն շահագործող դասակարգերի շարքին, որ բանուորութիւնն էր համարում միայն ընչազուրկ ու շահագործուող դասակարգ, յանկարծ պաշտպան հանդիսացաւ գիւղացութեան և սկսեց նրա շահերին թմբուկ զարնել։

Համագումարում վրացի գիւղացութեան ճնշող մեծամասնութիւնը էսդէկներին կողմնակից հանդիսացաւ։ Իսկ հայ գիւղացութիւնը Հ. Յ. Դաշնակցութեան ծրագրին էր համակրում, որ կողմնակից է հողի համայնացման և սեփականութիւնների ջնջման սկզբունքին։

Թիւրք գիւղացութիւնը մնում է երկու կողմերի մէջ առկախ։ Երևանում և Կարսում տեղի ունեցած գիւղացիական համագումարներին թիւրքերը հայ գիւղացութեան հետ ընդունել էին Հ. Յ. Դաշնակցութեան ծրագիրը, հողային խնդրի շուրջ։ Բայց ներկայ համագումարում ընդհակառակը թիւրք գիւղացութիւնը միացաւ վրացի գիւղացութեան հետ և յարեց էսդէկներին։ Այդ յանկարծական փոփոխութիւնը առաջ բերին այն մի քանի բէկերը և հողատէրերը, որոնք իբրև գիւղացութեան ներկայացուցիչ գտնւում էին համագումարում։

Ըստ էութեան էսդէկների և էսէրների ծրագիրների մէջև հողային հարցի շուրջ շատ մեծ տարբերութիւն չկայ, տարբերութիւնը գտնւում է գործադրութեան եղանակի մէջ։ Էսդէկների թելադրած եղանակով հողերը վերջ ի վերջոյ ոչ թէ պիտի համայնանան, հաւասարապէս բաժանուեն աշխատաւոր շնչերի վըրայ, այլ ընդհակառակն, կամաց կամաց պիտի կենտրոնանան անհատ սեփականատէրերի ձեռքում և շահագործումն դարձեալ պիտի շարունակուի։ Բայց էսէրների ընդունած հողի համայնացումն ուղիղ ճանապարհով է առաջնորդում ընչազուրկ գիւղացութեան դէպի իր առաջադրած նպատակները։ Ահա՛ թէ ինչու թիւրք բէգերի և հողատէրերի համար աւելի ձեռնտու էր էսէրների ծրագիրը և նրանք միացան նրանց հետ։

Համագումարում մեծամասնութեան ձայնով անցաւ էսդէկների ծրագիրը։

Դժբաղդաբար համագումարը լաւ կերպով պատրաստուած չէր և նիստերի ընթացքում երևան եկան մի շարք թերութիւններ։

Համագումարը չըմնաց երբէք իր կոչման բարձրութեան վրայ, շարունակ աղմուկ և կուսակցական նեղ կրքերն էին իշխում։ Մի խոշոր պակասութիւն էլ, որ հայ պատգամաւորները երևան բերին, այդ այն է, որ հայերը չունեն մի կարգին հռետոր, ռուսագէտ հռետոր, որ կարողանայ ազդել հասարակութեան վըրայ իր պերճախօս և համոզեցուցիչ լեզուով։

Այդ տեսակէտից վրացիք աւելի բարձր են մեզանից։

Ա. Մանուկեան

## ԱԽԼԱԹԻ ԿՈՏՈՐԱԾԸ

### 1) ԾՂԱԿ

Վանի լճի արևմտեան եզերքին տափարակ դիրքի վրայ շինուած է վերոյիշեալ գիւղը։

Նախ քան համաշխարհային պատերազմը ունէր 350 տուն հայ բնակիչ։ Գիւղը ունէր ընդարձակ տարածութիւն, երկրագործութիւնը առաջ էր գնացել։ Սա ևս անմաս չմնաց կոտորածից, 1915 թ. Համբարձման գիշեր, քեօռ Հիւսէն փաշան իր զինակիցներով պաշարեց գիւղը և սկսեց անգթաբար կոտորել 5,250 տըղամարդ, կին և երեխայ։

Կոտորածից փախած 200 երիտասարդներ և ապաստանեցին չերքեզաբնակ Խուլիկ անունով գիւղը, յուսալով որ չերքեզները նրանց պիտի պաշտպանեն և ազատեն թշնամու ձեռքից։ Բայց ի զուր էր խեղճերի յոյսը. Նորից վրայ հասաւ թշնամին և բոլորին սրախողխող արեց, որոնցից միայն ազատուեցաւ մի քիւրդի շընորհիւ Յակոբ Խաչատուրեան անունով 17 տարեկան մի պատանի, որը 7 տեղից վէրք էր ստացել։

Թշնամին տարել է 6,500 ոչխար, 6,700 գոմէշ, եզ, կով և այլն չորքոտանիներ։

Գիւղը աւերակի է վերածուած։

2) ԿՈՒՇՏԵԱՆ

Ախլաթ գաւառից 22 վերստ հեռու Եղուակ կոչուած լեռան լանջին կիսահարթ դիրքի վրայ ինկած է վերոյիշեալ գիւղը, անուանի է իր մաքուր օդի, սառնորակ ջրերի և լայնատարած արօտատեղիների կողմից։

Պատերազմից առաջ ունէր 100 տուն հայ բնակիչ. 1915 թ. ապրիլ 23-ին յայտնի ոճրագործ Խասըմ պէկը արշաւեց գիւղի վրայ, հաւաքեց գիւղացիներին, տերես պաշտպան հանդիսացաւ յիշեալներին, մինչև որ յանձնեցին իրեն բաւական քանակութեամբ փողեր, վերջը հաւաքեց խղճալի գիւղացութեան ունեցած 2,800 ոչխար, 1,200 գոմէշ, եզ և այլն կենդանիներ և հեռացաւ։

Նոյն թուի Համբարձման հինգշաբթի առաւօտ, Պուլանըգ գաւառի Փիրան գիւղի քիւրդ ցեղապետ Ասատը և յայտնի ոճրագործ Աւտըլ-Մէջիտը իրենց խուժանով պաշարեցին գիւղը և առանց այլևայլի սկսեցին կոտորածը։ Չորս ժամուայ ընթացքում կոտորեցին 1,800 տղամարդ, կին և երեխայ, բացի իրենց հետ վերցրած 50 գեղեցկուհիներից, ազատել են միայն 450-ի մօտ կին և երեխայ։

Կուշտեան ունէր մի եկեղեցի, մի ուսումնարան, որոնց հետքն անգամ չի երևում։

*Յովսէփ Բարսեղեան*

---

# ՌԱԶՄԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Ռուսական զօրքի յարձակումն շաբաթուայ ընթացքում՝ եռանդով շարունակուեց։ Ջոլոչեկու ողղութեամբ. Բրզեժանից հարաւ-արևելք շարունակւում է թնդանօթային ուժեղ կրակ։ Յունիսի 25-ին, գեն. Կորնիլովի զօրքերը գրոհ տուին թշնամու ամրութիւնների վրայ Ստանիսլավովի մօտ և պատռեցին թշնամու գլխաւոր գիծը, մեր զօրքերը առաջ անցան և գրաւեցին Ինղուպոլ, Ժիւրժով, Պաւելչէ, Ռուբնէ և Լեսեց գիւղերը։ Այդ ճակատամարտում ռուսները վերցրին 131 սպայ, 7000 զինուոր, 48 թնդանօթ, որից 12-ը ծանր, և գնդացիրներ։

Յունիսի 25-ին ռուս զօրքերը կրկին շարունակեցին առաջ ընթանալ Ստանիսլավովի ուղղութեան վրայ։ Գալիչի ճանապարհին, Գուցիսկայի և Պաւելչէի շրջանում յամառ կռիւ է։

Ռուսական այս փառապանծ յարձակումը մեծ շփոթութիւն է առաջ բերել գերմանական և աւստրիական ժողովուրդների մէջ։ Նրանց համար անսպասելի էր ռուսական մրափող և կազմալուծուող արջի այս յանկարծական մռնչիւնը։

Մինչդեռ ռազմաճակատում զօրքերը կատարում են իրենց հայրենասիրական պարտքը, թիկունքում ժողովուրդը խաղալիք է դարձել պրովակատորների ձեռքում։ Մութ ոյժերը սրում են իրենց ատամները և ամեն քայլափոխին չեն դադարում ժողովրդի բարոյական բարձրութիւնը ձգելուց։

Պէտք է ուժեղ աշխատանք սկսել թիկունքը ապահովելու մութ տարրերի ոլոքներից, որպէսզի ճակատի վրայ, արեան դաշտում ռուս զինուորը ապահովուած և արի լինի։

Փրանս-անգլիական ճակատում գերմանացիք յարձակողականի են անցել. թշնամու ոյժի մեծագոյն մասը ծանրացած է այս ճակատի վրայ։ Շամպանիում գերմանական գրոհները յետ են մղւում։ Մասսի ձախ ափին ֆրանսիացիք գրաւեցին թշնամու ամրացրած դիրքը։

Դաշնակիցների ամենամեծ պակասութիւնն ներկայ պատերազմում նրանում է կայանում, որ նրանք անջատ-անջատ են յարձակւում, միասին զարնել և յարձակուել բոլոր ճակատների վրայ, որ ճզմեցնէր թշնամու խելագար վազքը, մինչև այսօր չը պատահեց։ Մինչդեռ գերմանացիք միաժամանակ բոլոր ճակատների վրայ յարձակուելու մեթոդը գործադրում են և այդ նրանց յաջողւում է։

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ ՖՐԱՆՍԱՅԻ ՄԷՋ

Ամենավստահելի աղբիւրէ կիմանանք, որ «Ֆրանս-Արմէնի» ընկերութիւնը վերջերս առանձին եռանդով մը ձեռք առած է հայկական խնդիրը արծարծել Ֆրանսայի մէջ։ Նա որոշած է մասնաւոր բանախօսներ ղրկել Ֆրանսայի գաւառները, որոնք պիտի ներկայացնեն Հայաստանը և հայկական խնդրի ամբողջ պատմութիւնը ֆրանս. ժողովուրդին։ «Ֆրանս Արմէնի» ընկերութիւնը այդ ուղղութեամբ իր առաքելութիւնը լաւագոյն և արդիւնաւոր կերպով կատարելու համար յանձնարարած է Ազգ. պատուիրակութեան պետ Պօղոս Նուպարի, որ պատրաստէ ընդարձակ և տիպար զեկուցում մը Հայաստանի և հայկական խնդրի մասին, ուր մանրամասն նկարագրուի Հայաստանի ամբողջ անցեալը, ներկան, անոր աշխարհագրութիւնը, ժողովուրդի տընտեսութիւնը, ընդհ. մշակոյթը, ձգտումները և այլն։

Այդ կարևոր աշխատանքին արդէն ձեռնարկուած է և մօտ օրէն երևի վերջացած՝ կը ներկայացուի Ֆրանս-հայկական ընկերութեան։ *«Հայրենիք»*

---

# Երգիծանք

## ԱՄԵՆԱՅԱՂԹ ՆԱԽԱՆՁԸ

*(Մարկ Տուէն)*

I.

Մի քանի ամիս առաջ անկախների կուսակցութիւնն իրա կողմից ինձ թեկնածու էր ընտրել Նիւ Եօրկի նահանգի կառավարչի պաշտօնի համար. ախոյեաններս էին միստր Ջօն Սմիտը և միստր Բլէնկ Բլէնկը։ Գիտէի որ այդ պարոններից մի բանով անկասկած գերազանց եմ—անունս երբէք մազաչափ բծաւորուած չէր, իսկ նրանց մասին լրագրները յոգնել էին գրելուց, որովհետև վերջին տարին անթիւ անգամ բռնուել էին կեղտոտ գործերի մէջ—բարի անուան հետք չէր մնացել նրանց մօտ։

Այն րոպէներին, երբ զգում էի իմ գերազանցութիւնը և սրտիս մէջ դրա վրայ հրճւում, յանկարծ մի պղտոր հոսանք գալիս տակն ու վրայ էր անում երջանկութեանս խորքը։ Երևակայում էի թէ առաջիկայ պայքարի միջոցին ինչպէս պիտի անունըս դէս ու դէն քաշկռտեն այդ պարոնների անունների հետ։ Որովհետև այդ բանը շատ էր անհանգիստ անում, որոշեցի այս ամենի մասին անկեղծօրէն յայտնել տատիս։ Նա պատասխանեց շուտափոյթ և կտրուկ. Նա գրում էր. «Կեանքիդ մէջ ոչ մի այնպիսի բան չես արել, որ երեսդ կարմրէր, բայց դէ աչքից անց կացրու լրագիրները, տես ինչ տեսակ մարդկանց են պատկանում Սմիտ և Բլէնկ պարոնները և յետոյ վճռիր—արդեօք վայե՞լ է քեզ նրանց հաւասարուել և նրանց հետ ընտրական պայքարի մէջ մտնել»։

Այդ նոյն կարծիքն ունէի և ես։ Ողջ գիշերը չըկարացի աչք կպցնել, սակայն քանի խորն էի մտածում, այնքան նահան-

ջնել թւում էր աւելի։ Ինձ ընտրել էին, ուրեմն պարտաւոր էի պայքարել, մրցել։

Նախահաշուի միջոցին սառնարիւն նայում էի լրագրին, յանկարծ աչքիս ընկաւ այս յօդուածը, ուղիղ ասած կեանքումս այնպէս չփոթուած չէի, ինչպէս այս անգամ եղաւ։ Ահա յօդուածը.

«Երդմնադրուժը. Երեւի պր. Մարկ Տուէնը այժմ, եթէ հանդէս է գալիս նահանգի կառավարչի թեկնածուի դերում, կը ցանկանայ պարզել, թէ ինչպէս եղաւ, որ 1863 թ. Վահավաղում Կոհէնխէնի մէջ 24 անձանց վկայութեամբ երդմնադրուժ յայտնուեց։ Այդ յանցանքը կատարեց նա ցանկանալով յափշտակել աղքատ թշուառ այրուց և նրա խեղճ ընտանիքից Բանանի ծառը, որ նրանց ողորմելի ապրուստի միակ միջոցն էր։ Թէ պարոն Տուէնի և թէ մեծ ժողովրդի համար, որի կողմից պիտի քուէարկուի, խիստ կարեւոր է պարզել այդ հանգամանքը։ Տեսնենք այդքան քաջութիւն կունենայ՞ թէ ոչ»։

Ապշութիւնից մնացի քար կտրած։ Տէ՜ր Աստուած, մի՞թէ այսքան սարսափելի, անիրաւ զրպարտութիւն կըլինի։ Ա՜խր ես բէք տեսած չեմ Կոհէնխէնը, կեանքումս չեմ լսած Վահավաղի անունը, Բանանի ծառը չեմ կարող զանազանել կենտուրայից։

Չգիտէի ինչ անեմ, ջախջախուած էի և անօգնական դրութեան մէջ ողջ օրն անցաւ, դեռ չըգիտէի թէ ինչ եմ անելու։ Հետեւեալ օրը նոյն լրագրում երեւաց այս հակիրճ նկատողութիւնը. «պր. Մարկ Տուէնը պերճախօս լռութիւն է պահպանում Կոհէնխէնի երդմնադրժութեան վերաբերմամբ. սա նշանակալից է»։

Դրանից ետ լրագիրը նուիրեց ինձ հետեւեալ յօդուածը.

«Պատասխան են պահանջում, արդեօք նահանգապետի պաշտօնի նոր թեկնածուն այնքան ազնիւ կը լինի՞, որ պարզի իր համաքաղաքացիներից մի քանիսին, թէ ինչպէս պատահեց որ նրա հետ մի տան մէջ ապրող ընկերները Մոնտան կայարանում, երբեմնապէս նկատելով դրանց մօտից զանազան թանգագին իրերի կորչելը և կորուստները միշտ գտնելով Տուէնի մօտ կամ նրա սնդուկում, վերջապէս ստիպուած եղան նրա իսկ օգուտն ի նկատի առած, լաւ խրատել, փառաւոր ջարդերով խորհուրդ տալ, որ շուտ հեռանայ կայարանից։ Տեսնենք, բարի կըլինի՞ որ այս բանը պարզի։

Արդեօք կարող էի մտքովս աւելի լիրբ ու չարամիտ բան անցկանել քան այդ զրպարտութիւնն էր։ Կեանքումս ոչ մի անգամ Մոնտան չեմ եղած, սակայն այդ լրագրի ամենևին փոյթը չէր, նա մի գլուխ ինձ անուանում էր «Մոնտանեան գող Տուէն»։

Բանն այնտեղ հասաւ, որ ամեն անգամ այդ լրագիրը բաց անելիս ողջ մարմնով սարսռում էի նման այն մարդուն, որ վերմակը վերցնելով կարծում էր թէ տակը իժ օձ կայ։

Մի քանի օրից ես կարդացի հետեւեալը.

«Ստախօսութիւնը բացուած. Միքայէլ Ֆլանագան, Սնուբ Րաֆերտ և Կուլլիկան վկաները երդումով հաստատեցին, որ Մարկ Տուէնի անզգամ ասութիւնը, թէ մեր ազնուազարմ ներկայացուցիչ Բլէնկի հանգուցեալ պապը աւազակութեան պատճառով մեծ ճամբի վրայ կախուել է—միանգամայն հնարովի, անպոչ սուտ է։ Օրինաւոր մարդկանց շատ ցաւալի է տեսնել, որ քաղաքական դիրք ձեռք բերելու համար դիմում են այնքան անազնիւ միջոցների, զրպարտում են գերեզմանում խաղաղ ննջողներին՝ ցեխոտելով նրանց մաքուր անունները։ Սոսկալի կըսկիծ պիտի պատճառի այս զզուելի զրպարտութիւնը հանգուցեալի բարեբարոյ ազգականներին և բարեկամներին, ուստի առանց խղճահարուելու խորհուրդ ենք տալիս վրդովուած, վիրաւորուած բնակիչներին պահանջել զրպարտչից միահամուռ բաւարարութիւն, մինչև անգամ առանց օրէնքի դիմելու։ Թէպէտ աւելի լաւ է թողնել, որ Մարկ Տուէնը իրա յանցապարտ խղճի խայթից տանջուի... բայց եթէ ամբոխը յուզուի ու կոյր կատաղութեան մէջ դատաստան կտրի զրպարտչի գլխին, ո՞ր օրէնքը կարող է այդ հերոսներին պատժել»։

Վերջին պարբերութեան խորիմաստ եզրակացութիւնն այն հետեւանքն ունեցաւ, որ հետեւեալ գիշերն և եթ ստիպուած էի դուրս փախչել անկողնից և խոհանոցի դռան ետև թագնուել, որովհետև «յուզուած և վիրաւորուած բնակիչները» դեռ առաջ փողոցից ինձ վրայ ափեղցփեղ հայհոյանքներ թափեցին, յետոյ տուն պրծնելով՝ փշրտեցին լուսամուտների անցքերը, ներսի կահկարասին և հեռանալով տարան հետները զանազան իրեղէններ, որքան կարողացան։ Բայց և այնպէս, ձեռս կը դնեմ աւետարանի վրայ ու կը հաւատացնեմ, որ երբէք որ և է զրպարտութիւն չեմ արել Բլէնկի պապի հասցէին. կասեմ անգամ, որ մինչև այդ օրը նրա մասին ոչ լսել էի և ոչ խօսեցել։ Այնուամենայնիւ անիծած լրագիրը այդ ժամանակից սկսեց ինձ անուանել «ննջեցեալներին զրպարտող Տուէն»։

*Քամալեանց Ս.*

# ԳԱՒԱՌ

## ԲԱՐ. ԸՆԿ. ԲԱԹՈՒՄԻ ՃԻՒՂԻ ՏԱՐԵԿ. ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԸ

15 յունիսի, Բաթում

Մայիսի 28-ին կայացաւ ճիւղիս տարեկան ընդհանուր ժողովը։

Օրակարգի խնդիրներն էին՝ հաշուետուութիւն և վերստուգիչ յանձնաժողովի ընտրութիւն։

Հաշուետուութիւնից երեւաց որ ճիւղը ունի 12,000 ռ. եկամուտ։ Հաշիւները և գրագրութիւնները տարուած են կանոնաւոր։ Վարչութեան գործունէութիւնն ընդհանրապէս լաւ և եռանդուն է եղել։

Վերստուգիչ յանձնաժողովի անդամներ ընտրուեցին Ի. Ալիխանեան, Յ. Թէրզեան, Ս. Շահմելիքեան և Ս. Սօղոյեան։

Վարչութիւնը, ի միջի այլոց, միակն է եղել որ Զատկի տօներին յիշել է տեղիս գարնիզոնի հայ զինուորներին և 200 ռ. նուէր է ուղարկել։

Ախլքալաքցի Արշաւիր Սահաթճեանը, Յով. Միքայէլեանի միջոցով նուիրել է Ընկերութեան ճիւղին 100 ռ.։

Մոսկուայից Եր. Միհրանեան եւ ի յիշատակ իւր հանգուցեալ հօրը 100 ռ. է նուիրել ճիւղի վարչութեան։

Վարչութեան բացած «մի բաժակ թէյ», որ առաջ շատ համեստ եկամուտ և շրջանառութիւն ունէր, այժմ բաւականին յաջող է, թէ եկամուտի և թէ հասարակութեան գոհացում տալու տեսակէտից։ Հերթապահ տիկինները և սպասաւոր օրիորդները սիրայօժար և եռանդուն կերպով գործը տանում են իրենց ուսերի վրայ, որը արժանի է գովասանքի և շնորհակալութեան։

Ռ. Ոսկէնդէրեան

## Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է Թիֆլիսի Քաղաքային Վարկի Ընկերութիւնից դպրոցներին յատկացնելու 2000 ռ.։

---

Խորհրդի որոշումներից.—

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը իւր վերջին նիստում արել է հետեւեալ որոշումները.—

1. Յուլիսի վերջերին նշանակել ընդհանուր ժողով և կատարել Վարչութեան հեռացած անդամների և փոխ-անդամների ընտրութիւն։

2. Աչքի առաջ ունենալով կենսական մթերքների անասելի թանկութիւնը, աւելացնել ծառայողների ռոճիկները։

3. Տաճկահայ գերիներին տալ նպաստ իւրաքանչիւրին 50-ական ռուբլի։

4. Առաջիկայ սեպտեմբերից բանալ մի քանի կենտրոնական դպրոցներ օտարախօս վայրերի կենտրոններում, որի մասին դիմել ճիւղերին ցոյց տալու յարմարագոյն կենտրոնատեղեր։

5. Ընկ. նպաստով պահուող դպրոցների նպաստները աւելացնել և հասցնել տարեկան 600 ռ. և տալ այդ նպաստները այնպիսի դպրոցների, որոնք կունենան կանոնաւոր դպրոց և մեծ թուով աշակերտներ։

## Քրոնիկոն

Ներքին գործերի մինիստրութիւնը յայտնել է Անդրկովկ. Առանձին Կոմիտէին, որ արտակարգ կերպով քննութեան է դրուել Անդրկովկասում զեմստւօ մտցնելու օրինագիծը։

—Անդրկովկասի յատուկ կոմիտէն տեղեկութիւն է ստացել, որ Ռուսաստանի և Ամերիկայի միջև բացուած է շոգենաւային պոստատար-մարդատար հաղորդակցութիւն Եապոնիայի վրայով։

—Կ. Հ. Բ. Ընկ. գրադարանի համար պատրաստուած են մեծ պահարաններ և ցուցակագրւում են ցուցակ չմտած գրքերը։ Ցուցակագրութիւնը կը վերջանայ ամառուայ ընթացքում և ապա կը տրուի տպագրութեան։

—Անդրկովկ. Առանձին Կոմիտէին կից կազմւում է յատուկ յանձնաժողով, որ զբաղուելու է Սահմանադիր Ժողովի ընտրութիւնները կազմակերպելու խնդրով։

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Իմանշալու գիւղում մի խումբ երիտասարդների ջանքերով բացուեց «ՐԱՖՖԻ» անունով գրադարան-ընթերցարան։ Խոնարհաբար խնդրում ենք հասարակութեան՝ դրամով, թերթով և գրքով օգնել յիշեալ գրադարանին, որ մի լուսաւոր օջախ կարող է հանդիսանալ գիւղացութեան։

Հասցէն՝ Камарлю, сел. Иманшанлу, Вартану Хачатурянъ (Վարչ. նախ. Վարդան Խաչատուրեանին)

## ՏԵՂԵԿԱՏՈՒ

Անգարայի Սունկուրլու գիւղից Հայկազուն Սարգսեան գերի ընկած է ռուսաց ձեռք Մամախաթունի կողմը. Փնտռողն է Սունկուրլուցի Երուանդ Զայլըգեանը. կը խնդրուի գիտցողներից իմացնել Թիֆլիս, Ապաս-Ապադեան հրապ. № 7, Կովկ. Հայոց Բար. Ընկ. գրասենեակ։



Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1